կան ապառազինութեամբ օժտել «Սալամիս» զրահաւորը։ Անկէ՝ զատ, Յունաստան երկու երեք Թորփիլահալածներ պիտի ապսպրէ եւրոպական նաւարաններուն։ Այսպէս Յունաստան ամէն անակնկալէ ազատ, պաղարիւնով պիտի շարունակէ իր խաղաղութեան քաղաքականութիւնը, յուսալով որ ի վերջոյ Էնկիւրի գործնապէս պիտի պատասխանէ առոր։

## Թուրք դահլիճին տագնապը

Պոլսէն «Թայմզ»ի կը հեռագրեն թէ Թուրքիոյ Ազգային Տնտեսութեան գործավար Րահմի պէյ հրաժարեցաւ՝ առողջական պատճառներով։

Իրեն յաջորդեց Զաթալճայի երեսփոխան Շաքիր պէյ, նախագահ ելմտական յանձնաժողովի։

## Բոլշեւիկեան նոր Գործադիր Մարմինը

Խորհրդային Միութեան Նորընտիր Գործադիր Կոմիտէն իր առաջին նիստը գումարեց Մայիս 29ի առտուն եւ ընտրեց 27 հոգինոց Նախագահութիւն մը։ Վերընտրուեցան վեց Նախագահներ, որոնք են՝ Կալինին, Պետրովսկի, Չէրվիակոֆ, Մուսապէկոֆ, Այտակոֆ եւ Խոճայէֆ։ Քարտուղար՝ Ենուկիցէ։

Ընտրեց նաեւ Ժողովրդական Գործավարներու Խորհուրդը, որ նոյնպէս անփոփոխ կը մնայ։ Նախագահն է դարձեալ Րիկով, արտաքին գործավարը՝ Չիչէրին, ելմտականը՝ Բրիւխանոֆ, պատերազմականը՝ Վորոշիլոֆ, առեւտրականը՝ Ա. Միկոյեան, Թղթատար - հեռագրականը՝ Անտիպոֆ, աշխատանքի՝ Ուլանոֆ։

Գործավարներու Խորհուրդին փոխ - Նախագահ ընտրուեցան Րուցուտակ, Օրժոնիկիցէ եւ Շմիտ։

Ազգային Տնտեսութեան Գերագոյն Խորհուրդի Նախագահ ընտրուեցաւ Կուիբիշէֆ, բանուորական և գիւղացիական քննչութեան ժողովրդային գործավար անուանուեցաւ Օրժոնիկիցէ, վիճակագրութեան կեդրոնական վարչութեան պետ՝ Միլիուտին։

Կեդրոնական Գործադիր Կոմիտէն կը բաղկանայ 586 անդամներէ, որոնց 132ը կին։ Բացի վերը յիշուածներէն, ընտրուածներուն մէջ են նաեւ Բուխարին, Տոմսկի, Լիտվինոֆ։ Իսկ Մաքսիմ Կորքի անդամ ընտրուեցաւ, մասնաւոր որոշումով։

## Ընդհանուր ներում Պուլկարիոյ մէջ

Պուլկար նախարարական խորհուրդը վաւերացուց ընդհանուր ներումի նոր օրինագիծ մը, որով ներման պիտի արժանանան մինչեւ 1925 Հոկտեմբեր 1 գործուած քաղաքական ոճիրները։ Այս նոր օրէնքէն պիտի օգտուին՝ գաղտնի կազմակերպութեանց հիմնադիրները, այս կազմակերպութեանց զրամատուները, անոնց զէնք հայթայթողներն ու պահողները։ Չպիտի ներուին միայն ծանր ոճիրներու հեղինակները։

Նախկին վարչապետ Բատոսլավոֆ, որ 10 տարիէ ի վեր արտասահման կ'ապրի, նոյնպէս պիտի օգտուի ընդհանուր ներումի այս օրէնքէն։

Օրինագիծը շուտով պիտի ներկայացուի Սոպրանիէին։

## Վարկ Թուրքիոյ երկաթուղիներուն համար

Էնկիւրիէն կը հեռագրեն թէ Ազգային մեծ ժողովը քուէարկած է 140 միլիոն Թրքական ոսկիի վարկ մը, բաժնուած 12 տարուան վրայ, շինելու համար Սվազ-Երզնկա-Էրզրում, Ատափազար - Պոլու - Պայընտըր, Ֆիլիոս - Էրէյլի երկաթուղիները, Սամսոնի, Մէրսինի եւ Էրէյլիի նաւահանգիստները, ինչպէս նաեւ Տրապիզոնի, Թէքալթուի(?) եւ Ամասրայի ամբարտակները։

Խորհրդարանը նոյնպէս քուէարկեց 100 միլիոն Թրքական ոսկիի վարկ մը, բաժնուած 12 տարուան վրայ, ոռոգումի ջրանցքներ բանալու համար։

## Քասրիէ Նանըմի խնդրին շուրջ

Միլլիյէթ հետեւեալ տեղեկութիւնները կը հաղորդէ.—

Հասկցուած է որ խմբակ մը որուն մէջ օտարական մըն ալ կայ, Քասրիէ Նանըմը Էնկիւրի ղրկած է մահափորձ կատարելու համար Հանրապետութեան Նախագահին դէմ։ Այս նպատակով, փաստաբան Անմէտ Վէֆիգ Իզմիրի մահափորձէն յետոյ Փարիզի եւ Լոնտոնի մէջ երկու ընդդիմադիր պետերու հետ տեսակցած է։ Եւ այս շփումները քանիցս կրկնուած են։ Քասրիէի Էնկիւրի մեկնելէն առաջ այդ խմբակին պատկանողներէն մէկուն աքարթըմանին մէջ վերջին գումարում մը եղած է։ Եւ այս գումարման հետեւանքով Քասրիէ Էնկիւրի ղրկուած է, բայց իմացած ըլլալով որ ոստիկանութիւնը զինքը կը հետապնդէ, ուրիշ ձեւով շարժելու պարտաւորուած եւ չէ կրցած յաջողիլ իր ծրագրած ձեռնարկին մէջ։ Ապացոյցներ կան նաեւ թէ՝ Քասրիէի եղբայրը, Նասըր ալ Պոլսոյ ընդդիմադիրներէն մէկ երկուքին հետ շփման մէջ մտած է։ Անմէտ Վէֆիգ եւ Նասըր ամէն զգուշական միջոց ձեռք առնելով Եւրոպա իրենց փախուստը ապահովելու համար իրենց անցագիրները պատրաստած են։

Հաստատուած է նաեւ որ Նասըրի՝ իր քրոջ ղրկած եւ թերթերու մէջ հրատարակուած նամակը ծածկագիր է։

∴ Մօտերս պիտի սկսի դատավարութիւնը։ Ցարդ 105 վկաներ լսուած են։ Հասկցուած է որ, կ'ըսէ «Ճիւմհուրիյէթ», ամբաստանեալներէն Անմէտ Վէֆիգ պէյ լրտեսութիւն ըրած եւ Չինագազարին Միլլի պայքարին դէմ շարժած է։



Պ. Կարապետ Քէշիշեան եւ զաւակները, ինչպէս նաեւ բոլոր պարագաները խորունկ ցաւով կը ցանուցանեն իրենց կնոջ, մօր եւ ազգականին՝

ՏԻԿԻՆ ՀԱՅՈՑ ՔԷՇԻՇԵԱՆԻ
(ՉԷՆԿԻԼԷՐՑԻ)
մահը, յետ երկարատեւ հիւանդութեան։ Յուղարկաւորութիւնը այսօր շաբաթ ժամը 11ին, 132 Rue Etienne Dolet, Alfortville։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԵՈԶԿԱՏԻ եւ շրջանի Հայր. Միութեան ընդհ. ժողովը՝ վաղը Կիրակի առաւօտ ժամը 10ին 131 Fbg. du Temple, մէթրօ Պէլվիլ։ Օրակարգ՝ հաշուետուութիւն ի նպաստ Կեսարիոյ Որբեւրուն տրուած երեկոյթ-պարահանդէսի։ Կը հրաւիրուին անդամ եւ ոչ անդամ հայրենակիցները։

ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԱՏԱՐԱԳ
Փարիզաբնակ Պ. Երուանդ Գազազեանի վաղամեռիկ տիկնոջ՝ ողբացեալ ՏԻԿԻՆ ԳՈՀԱՐԻԿ ԳԱԶԱԶԵԱՆի մահուան չորրորդ տարելիցին առթիւ.վաղը Կիրակի յետ Ս. Պատարագի Գազազեան եւ Կարմիրեան ընտանեաց ննջեցելոց համար մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, Փարիզի Հայոց եկեղեցւոյն մէջ, 15 Rue Jean-Goujon :


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY


ՎԱՂԸ Կիրակի ժամը 10ին Յ. Վրդ. Նալպանտեան, հանդիսաւոր պատարագ պիտի մատուցանէ, հայկական արարողութեամբ՝ Պրիւքսէլի Սիոն Յիսուսի Basilique Nationale եկեղեցւոյն մէջ (Plateau de Koekelbergh)։ Եկեղեցական երգեցողութիւնները հայ լեզուով պիտի կատարէ նոյն եկեղեցիի պելճիքական երգչախումբը, մասնակցութեամբ երգեհոնի եւ նուագախումբի։

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

## Զօր. Փանկալոսի դատը

Աթէնքէն կը հեռագրեն.—

Երեսփ. ժողովը լսելէ յետոյ խորհրդարանային յանձնաժողովին տեղեկագիրը, որոշեց հինգ յանցանքներու համար դատի ենթարկել նախկին դիկտատոր Զօր. Թէոտոր Փանկալոսը, իր գահլիճին պատերազմական փոխ-նախարար զօր. Նիէտէրը, ելմտական Նախարար Թանթալիտէսը, հաղորդակցութեանց նախարար հազարապետ Լարիսը եւ Վակոփուլոսը:

Դատավարութիւնը տեղի պիտի ունենայ Ծերակոյտին առջեւ, յառաջիկայ հոկտեմբերին:

Ինչ պէս կը յիշուի, զօր Փանկալոս ինքզինքը դիկտատոր հռչակեց 1925 յունիսին եւ տապալեցաւ 1926 օգոստոսին: Ժամանակ մը Կրէտէի եւ Էկինայի մէջ բանտարկուելէ յետոյ, 1928ի փետր.ին նախնական դատավարութեան մը ենթարկուեցաւ։ 1928 յուլիսին ժամանակաւորապէս ազատ ձգուեցաւ կարգ մը պայմաններով:

## Շէյխ Սնուսի անձնատուր

«Թայմզ»ի Հռոմի թղթակիցը կը հեռագրէ թէ յունիս 13ին Գարքայի մօտ, —Պէնկազիէն 70 քիլոմեդր հեռու— իտալական իշխանութեանց անձնատուր եղան Սնուսի ապստամբներու վարիչները: Ասոնց մէջ է Օմար էլ Մուխթար, 70ամեայ ծերունի մը՝ Իտալիոյ ամէնէն կատաղի թշնամին եւ Լիբիոյ փոխ կառավարիչը: Սէյիտ Հիւսէյին պէն Մուհամմէտ Բրտա էս-Սրնուսի, մեծ Սնուսիին եղբօրորդին, ինչպէս նաեւ Պրասա ցեղախումբին պետ Ֆատըլ Պու՝ Օմար:

Իտալացիները մեծ կարեւորութիւն կուտան այս անձնատուութեանց: Օմար էլ Մուխթարը կաշառելու կամ սիրաշահելու ամէն փորձ ի զուր անցած էր ցարդ: Այժմ Պէնկազիի եւ Տրիպոլիսի մէջ խաղաղութիւնը վերջնապէս հաստատուած կը նկատուի:

## Կարմիր օրը

Խորհրդային թերթերու համաձայն, Մոպրի (Միջազգային Օգնութեան կազմակերպութիւն Յեղափոխականներուն համար) Մոսկուայի կեդրոնը հրահանգներ ղրկած է արտասահմանի իր մասնաճիւղերուն, որպէսզի պատրաստուին Կարմիր Օրուան (Օգոստոս 1) ցոյցերուն, հետեւեալ նշանաբանով, «Պատերազմ՝ Պատերազմի դէմ»:

Յունիս եւ յուլիս ամիսներուն հրապարակային հաւաքոյթներ պիտի կազմակերպուին՝ մանաւանդ զինուորներուն եւ նաւաստիներուն համար:

## Իտալական օդանաւերու վերադարձը

Աթէնքէն կը հեռագրեն թէ իտալական օդանաւային տորմիղը, որ Պոլիսէն դէպի Ցունաստան մեկնած էր, չորս ժամ եւ մէկ քառորդ թռիչք կատարելէ յետոյ ծով իջաւ Ֆալէրոնի առջեւ (Աթէնքի մօտ): Պոլսէն մեկնելէ առաջ, իտալական օդանաւերը հետաքրքիր թռիչքներ կատարեցին Թուրքիոյ հին մայրաքաղաքին վրայ եւ թրքական հինգ օդանաւեր ողջերթ մաղթեցին իտալական տորմիղին՝ Մարմարայի վրայ:

## Պուլկարեւսերպ սահմանին վրայ

Սոֆիայէն կը հեռագրեն.—

Վերջին օրերս Պուլկարիոյ եւ Եուկոսլաւիոյ սահմանագլուխին վրայ, Փէթրիչի եւ Քուլայի շրջաններուն մէջ, տեղի ունեցան աւազակային յարձակումներ, որոնք կը վերագրուին տարագիր հողագործական եւ համայնավար տարրերուն:

Քուլայի մօտ, մեծ խճուղիին վրայ, աւազակները կողոպտեցին քանի մը ճամբորդներ, եւ յանկարծական յարձակում գործեցին պահականոցի մը վրայ, սպաննելով ոստիկան զինուոր մը եւ ծանրապէս վիրաւորելով երկու քաղաքապահներ: Հետապնդող պահակներ ճամբայ հանուեցան անմիջապէս եւ աւազակները գտան մօտակայ անտառի մը մէջ: Քանի մը ժամ տեւող հրացանաձգութիւն մը տեղի ունեցաւ աւազակներուն եւ զանոնք հետապնդողներուն միջեւ:

Կը կարծուի թէ աւազակները յաջողեցան սահմանին միւս կողմը անցնիլ:

## Ռազմանիւթի պահեստ մը կը պայթի

Պերլինի մօտակայ Հօէննոյնտորֆի մէջ հրդեհի մը հետեւանքով պայթեցաւ ռազմանիւթի կարեւոր մթերանոց մը, որ պահուած էր շէնքի մը ընդարձակ շտեմարանին մէջ:

Փլատակներուն տակէն ոստիկանութիւնը գրաւեց գնդացիրներ, պատերազմական հրացաններ եւ ուրիշ ռազմանիւթեր, որոնք կը պատկանէին «Պողպատեայ Սաղաւարտ»ի տեղական կազմակերպութեան:

∴ «Ֆոսիշէ Ցայթունկ» կը գրէ թէ Հանովրի շրջանները երեւան հանուած են նաեւ ուրիշ զէնքի մթերանոցներ: Ասոնցմէ մէկուն մէջէն 10 գնդացիր գտնուեցաւ:

## Արաբական տարին

Հիճրէթի 1348 տարին սկսաւ Յունիս 8ին (1 Մուհարրէմ): Այդ օրը արաբական բոլոր երկիրներու մէջ պաշտօնատուններ փակուեցան:

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

Ս. ՇԱՄՈՆԻ կոմիտէն բոլոր ընկերները ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Վարուժան ակումբը: Օրակարգ ԺԱ ընդհ. ժողովի մասին կը զեկուցանէ ընկ. Գույումճեան:

ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆԻ կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Place de Peupleի սրճարանին վերնայարկը: Օրակարգ՝ նոյնպէս:

ԼԻՈՆԻ Շրջ. կոմիտէն ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ Պուրկուանի ընկեր - ընկերուհիները այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին: Օրակարգ՝ նոյնպէս:

Շավիլի Արզումեան Ենթա-կոմիտէի ընդհանուր ժողովը՝ այս ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին Սէն-Լազար-Շավիլ կայարանին քովի սրճարանը: Ժողովը կը փակուի ճիշդ 10.30ին:

Լիոնի Շրջ. կոմիտէն ստիպողաբար դասախօսական ժողովի կը հրաւիրէ Լիոնի բոլոր խումբերու ընկերները այս իրիկուն ժամը 8.30ին ընկ. Ճանկլօզեանի ճաշարանը: Կը դասախօսէ՝ ընկ. Գույումճեան, «Հայաստանի անկախութեան անհրաժեշտութեան» մասին:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՌՈՒՍԱՀԱՅ կանանց միութեան ընդհանուր ժողովը՝ տեղի կ'ունենայ այս շաբաթ օր, ժամը 3ին Հ. Հ. Պատուիրակութեան շէնքին մէջ 71 Av. Kléber, Paris (16e). Օրակարգ՝ 1. Տարեկան հաշիւ միութեան միջոցների մասին. 2. Հաշիւ միութեան գործունէութեան նոյն ժամանակուայ համար. 3. Հաշիւ վերաքննիչ մասնաժողովի, 4. ընտրութիւն վարչութեան եւ վերաքննիչ մասնաժողովի: Բոլոր անդամներից խնդրւում է ներկայ գտնուիլ:

ՅԱՐԴԳԻՂ

Այս ուրբաթ իրիկուն ժամը 9ին «Վոլթէր»ի սրահին մէջ, Յ. Ֆրէնկեան կը կարդայ իր մէկ նորավէպը՝ «Դիմանկարը»:

Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:

ՍԱՆԱՍԱՐԵԱՆ Միութեան ընդհանուր ժողովը այս շաբաթ, կէսօրէն յետոյ ժամը 3ին, Ֆլորիս ճաշարանը, 61 Rue Monsieur le Prince: Անդամներէն ու տակաւին չարձանագրուող Սանասարեանցիներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ: Օրակարգ.— Վարչութեան համարատուութիւն, եւ նոր ընտրութիւն:

ՀԱՅ Մարզական Միութեան (U. S. A.) ընդհանուր ժողովը՝ այսօր, Չորեքշաբթի 19 յունիս, գիշերուան ժամը 9ին, 130 Bould. St. Germain. Métro Odéon. Ստիպողաբար կը հրաւիրուին հին ու նոր բոլոր անդամները: Օրակարգ.— Վարչութեան ընտրութիւն:



## «ԵՐԿՈՒՆՔ»

ԵՐԿՈՒՆՔի Բ. Թիւը ամբողջովին սպառած ըլլալով, թէ մասնաճիւղերուն եւ թէ անհատական խնդրանքներուն լիապէս գոհացում կարելի չեղաւ տալ: Ուստի կը խնդրենք բոլոր անոնցմէ, որ ԵՐԿՈՒՆՔի բաժանորդ են կազմեր, մեզի վերադարձնեն Ա. եւ Բ. Թիւերը փոխարէն պիտի ստանան Գ. Թիւը:

ԵՐԿՈՒՆՔի սպառումը ապահովուած ըլլալով, նոր ապսպրանքները ընել առաջուընէ:

Այս առթիւ շնորհակալութիւն կը յայտնենք մեր համակիրներուն, որոնք ապահովեցին աննախընթաց յաջողութիւն մը ԵՐԿՈՒՆՔի տարածման համար:

Վարչութիւն


EMPIRE, Միգ իր-Զօ. 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

